Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 12 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78։*

---

# ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱԳԻՏԱՏՈՐԸ

*Նոր, սոցիալիստական հասարակության հիմքը դնելով, Վլադիմիր Իլյիչ Լենինը խոսում էր «Հարյուր հազարավոր պիտանի մարդկանց կոմունիստական լուսավորությունը ի սպաս դնելու» անհրաժեշտության մասին։ Մասսաների գիտակցականությունը սովետական պետության ուժի աղբյուրներից մեկն է։ Երբ մասսաներն ամեն բան գիտեն, ամեն բանի մասին կարող են դատել և ամեն բանի ձեռնամուխ են լինում գիտակցաբար, այն ժամանակ անպայման ապահովված է գործի հաջողությունը։*

*Ընկեր Ստալինը բազմիցս ընդգծել է, որ պարտիայի քաղաքականությունը բանվորներին ու գյուղացիներին պարզաբանելը մասսաներին ճիշտ ղեկավարելու կարևորագույն պայմանն է։ «...Պետք է,— ասել է ընկեր Ստալինը,— պարզաբանել պարտիայի ու սովետական իշխանության ցուցումները, պարզաբանել համբերատար և ուշադիր կերպով, որպեսզի մարդիկ հասկանան, թե ինչ է ուզում պարտիան և թե նա ուր է տանում եր-*

կիր։ Այսօր չհասկացան, նեղություն քաշեցեք վաղը բացատրելու։ Չհասկացան վաղը, նեղություն քաշեցեք բացատրելու հաջորդ օրը։ Առանց դրան չկա և չի կարող այժմ լինել ոչ մի ղեկավարություն»։

Կատարելով Լենինի և Ստալինի ցուցումները, պարտիան դաստիարակել և աշխատավորների կոմունիստական լուսավորության գործին ի սպաս է դրել բոլշևիկյան ագիտատորների հսկայական բանակ։ Ագիտատորների կազմի մեջ կան ո՛չ միայն կոմունիստներ, այլև անկուսակցական բոլշևիկներ՝ մեր հայրենիքին նվիրված հայրենասերներ։ Դա մասսաների հետ պարտիայի անխախտ կապի, պարտիականների ու անպարտիականների փոխադարձ վստահության ակնառու ապացույցներից մեկն է։

Բոլշևիկյան ագիտատորներն իրենց ճշմարտացի խոսքով բանվորներին, կոլխոզնիկներին, ինտելիգենտներին օգնում են ավելի լավ հասկանալու և կենսագործելու կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, որը կազմում է մեր պետության կենսական հիմքը, սովետական ժողովրդին հերոսական ստեղծարար աշխատանքի է ոգեշնչում հանուն կոմունիզմի հաղթանակի։

Մասսաների վրա մեր ագիտատորների



ներգործության ուժն այն բանի մեջ է, որ նրանք գաղափարական, սկզբունքային մարդիկ են, որոնց խոսքը չի տարբերվում գործից։ Նրանք կայունության և նախաձեռնության օրինակ են ցույց տալիս դժվարությունների դեմ մղվող պայքարում, հաստատակամության և եռանդի օրինակ՝ առաջադրված նպատակին հասնելու գործում։

Թե որքան մեծ է ագիտատորների դերը ձեռնարկության, հիմնարկության, կոլխոզի ամենօրյա կյանքում, այս բանը կարելի է տեսնել Տամբովի մարզի Իզբերդեևի շրջանի «Յասնայա Պոլյանա» գյուղատնտեսական արտելի ագիտկոլեկտիվի օրինակով։ Այստեղ ագիտատորների կազմում կան պարտկազմակերպության և անպարտիական ակտիվի լավագույն ուժեր։ Նրանք բոլորն էլ խանդավառությամբ աշխատում են իրենց համագյուղացիների քաղաքական գիտակցությունը բարձրացնելու վրա, մարդկանց ոգեշնչելով աշխատելու որքան կարելի է ավելի լավ, որքան կարելի է ավելի շատ բան անելու ընդհանուր բարօրության համար։ Ագիտատոր Նիկոլայ Կլիմովը զրույց է անցկացրել բնության վերափոխման պլանի մասին, պատմել է իրենց կոլխոզի մոտիկ ապագայի մասին, կոլխոզնիկներին համոզել է ակտիվորեն

զբաղվելու անտառատնկման գործով։ Կոլխոզնիկներն անմիջապես հետևել են ագիտատորի կոչին, չորս ու կես հեկտար տարածության վրա տնկել են կաղնի և ուշադրությամբ խնամում են անտառաշերտերը։ Ագիտատոր Անդրեյ Նաումովը զրույց անցկացնելով անասնաբուծության զարգացման պետական եռամյա պլանի մասին, կարողացել է ունկնդիրների մեջ առաջ բերել արժեքավոր նախաձեռնություն՝ կոլխոզների կերային բազան ամրապնդելու ուղղությամբ։ Այժմ կոլխոզային ագիտկոլեկտիվը պարզաբանում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը «1949 թվին բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումներն անցկացնելու մասին», անձնվեր աշխատանքի մոբիլիզացնելով կոլխոզնիկներին։

Ագիտատորն իր ոգով ժողովրդական տրիբուն լինելով, շարունակ գտնվում է մասսաների մեջ։ Կազմակերպական մեծ ուժ ունեն ագիտատորի անձնական օրինակը, գործով, աշխատանքով ագիտացիա մղելը։ Ագիտատորների մեջ կան շատ մարդիկ, որոնք երկրում լայն հռչակ են ձեռք բերել արտադրության մեջ կատարած իրենց նորարարությամբ։



Բոլշևիկյան ագիտացիայի գաղափարական մակարդակն անընդհատ աճում է։ Բայց բոլշևիկներին հատուկ չէ համգստանալ ձեռք բերվածով։ Նոր խնդիրները պահանջում են է՛լ ավելի բարելավել քաղաքական ագիտացիան քաղաքում ու գյուղում, բարձրացնել պատասխանատվությունն ու որակավորումը ագիտատորների, որպես մասսաների մեջ պարտիայի քաղաքականությունը անցկացնողների։

«Ստալինգրադի պարտիական կազմակերպությունում ագիտատորների հետ կատարվող աշխատանքի թերությունների և այն բարելավելու միջոցառումների մասին» հայտնի որոշման մեջ ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն պահանջեց խմամբով պատրաստել և պլանաչափորեն անցկացնել ագիտատորների մշտապես գործող սեմինարներ ու խորհրդակցություններ, նրանց կանոնավոր կերպով իրազեկ դարձնել բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության ներքին ու միջազգային քաղաքականության հարցերի վերաբերյալ, ժամանակին տեղեկացնել մարզի, քաղաքի, շրջանի առաջ դրված խնդիրների մասին։ Ավելի լավ ընդհանրացնել ու տարածել առաջավոր փորձը։ Հենց այդպես են վարվում պարտիայի Մոսկվայի, Լե-

նինգրադի, Կուրսկի և շատ ուրիշ մարզկոմները։ Առանձնապես պետք է նշել ագիտատորների աշխատանքի նկատմամբ Ուկրաինայում ցույց տրվող հոգատարությունը։ Ուկրաինայի Կ(բ)Պ Կենտկոմը վերջին ժամանակներս մի քանի անգամ քննարկել է քաղաքական ագիտացիայի վիճակը քաղաքներում ու գյուղերում, գործնական միջոցներ է ձեռք առել Ստալինոյի մարզի Մարինի շրջանային պարտկազմակերպության և Վիննիցայի մարզային պարտկազմակերպության մասսայական-քաղաքական աշխատանքի արժեքավոր փորձը տարածելու համար։

Դժբախտաբար ագիտատորների և ագիտացիայի նկատմամբ այդպիսի ամենօրյա աշխատանք դեռևս չկա մի շարք պարտիական կազմակերպություններում, մասնավորապես Թուրքմենական, Կիրովի և մի քանի այլ կազմակերպություններում։ Վերցնենք, օրինակ, ագիտացիոն աշխատանքի այնպիսի կարևոր բնագավառ, ինչպիսին է աշխատավորների հարցերին պատասխանելը։ Պարտիայի և կառավարության ամեն մի միջոցառում, այս կամ այն միջազգային իրադարձությունը բազմաթիվ արձագանքներ ու հարցեր են առաջ բերում բանվորների, կոլխոզնիկների ու ինտելիգենտների մեջ։ Դժբախ-



տաբար, պարտիական կոմիտեները թեև հաշվի են առնում այդ հարցերը, բայց դրանց հաճախ չեն պատասխանում։

Դա ոչ այլ ինչ է, եթե ոչ աշխատավորների օրինական իրավունքները չհարգելու արտահայտություն, բոլշևիկյան տրադիցիաների լուրջ խախտում։ Այդպիսի պրակտիկան անհամատեղելի է մասսաների կոմունիստական դաստիարակության խնդիրների հետ։

Մեր ժողովրդի հոգևոր պահանջմունքները տառացիորեն աճում են ո՛չ թե օրերով, այլ ժամերով։ Ագիտատորի պարտքն է՝ առանց բացառության չթողնել ուշադրության արժանի ո՛չ մի փաստ, տեղական օրգանների պրակտիկ գործունեության հասցեին արված քննադատական ոչ մի դիտողություն։

Մենք, անշուշտ, ունենք պատրաստված ագիտատորներ, որոնք խելացի կերպով և հմտորեն պատասխանում են աշխատավորների հարցերին։ Սակայն պարտիական կազմակերպությունները հազվադեպ են օգտագործում հրատապ թեմաներին վերաբերող այդ որակյալ պատասխանները՝ դրանք մասսաների մեջ տարածելու համար։ Խոսքը վերաբերում է այն բանին, որ այդ գործով ամենից առաջ զբաղվի տեղական մամուլը։ Երբ ագիտատորը պատասխանում է բանա-

վոր, նրան լսում է 15—20 մարդ։ Իսկ երբ այդ պատասխանը հրապարակված է թերթում, ապա այն արդեն կարդում են հազարավոր ու տասնյակ հազարավոր մարդիկ։

Ագիտացիայի մասին ճիշտ են ասում, որ դա արվեստ է։ Սակայն բանը միայն այն չէ, որ ագիտատորին սովորեցնենք պարզ ու մատչելի պարզաբանել բարդ հարցերը, զրույցների համար ընտրել ամենաուսանելի փաստերը։ Ագիտացիայի արվեստը նաև այն է, որ ագիտատորը չընկնի շաբլոնի մեջ, կարողանա տարբեր ձևով մոտենալ բնակչության տարբեր խավերին։ «...Չի կարելի միևնույն ձևով խոսել թե՛ գործարանային միտինգում և թե՛ կազակների գյուղում, թե՛ ուսանողական ժողովում և թե՛ գյուղացու խրճիթում... Ամեն մի պրոպագանդիստի և ամեն մի ագիտատորի արվեստն է՝ լավագույն ձևով ներգործել տվյալ լսարանի վրա, հայտնի ճշմարտությունը նրա համար դարձնել ավելի համոզիչ, ըստ հնարավորին դյուրըմբռնելի, ըստ հնարավորին ավելի ակնառու և խիստ տպավորիչ» (Լենին)։

Լենինի այս ցուցումն առանձնապես պետք է հաշվի առնեն Մերձբալթիկայի, Ուկրաինայի և Բելոռուսիայի արևմտյան մարզերի, Սովետական Մոլդավիայի պարտիական



կազմակերպությունները, որտեղ տեղի է ունենում գյուղի՝ սոցիալիստական ռելսերի վրա անցնելու ակտիվ պրոցես և որտեղ բնակչության մեջ բացառիկ կերպով մեծ է սովետական իրականությունը խոր կերպով հասկանալու ծարավը։

Բոլշևիկյան ագիտացիան մասսաների կոմունիստական դաստիարակության ուժեղագույն միջոցն է։ Նա պարտիային օգնում է մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունն ի սպաս դնելու միասնական, համաժողովրդական նպատակին։ Պարտկազմակերպությունների առաջ կանգնած խնդիրներն ավելի հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է սիստեմատիկ օգնություն ցույց տալ ագիտատորներին, հոգատար կերպով աճեցնել նրանց, զինել մարքսիստական-լենինյան թեորիայով։ Դա մեր ագիտացիայի հետագա հաջողությունների երաշխիքն է, այն բանի երաշխիքը, որ մասսաների կենդանի ստեղծագործությունն ու եռանդն է՛լ ավելի ակտիվորեն, է՛լ ավելի արագ կերպով առաջ կմղեն կոմունիզմի կառուցումը։

(«ՊՐԱՎԴԱՅԻ» հունիսի 21-ի առաջնորդը)

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ՓՈԽԱԴՐԵԼ ԴԱՇՏ—ԲՐԻԳԱԴԱ, ՕՂԱԿ

Անսահմանորեն մեծ է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ Կ(բ)Պ Կենտկոմի «1949 թվին բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումներն անցկացնելու մասին» որոշման տնտեսական ու քաղաքական նշանակությունը։ Այդ որոշման հաջող կատարումը մեր պարտիական, սովետական կազմակերպությունների, գյուղատնտեսության աշխատողների, կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների պատվի գործն է։ Այդ կարևորագույն որոշման անշեղ կենսագործման գործում վճռական նշանակություն ունի քաղաքական-մասսայական աշխատանքների ծավալումը կոլխոզներում, սովխոզներում, ՄՏ կայաններում։ Դրա համար էլ պարտիական կազմակերպությունների ամենահրատապ խնդիրն է՝ ագիտկոլեկտիվների միջոցով լայն ագիտացիոն-մասսայական աշխա-



տանք ծավալել կոլխոզներում, սովխոզներում, ՄՏ կայաններում՝ բերքահավաքը ամենակարճ ժամկետում և անկորուստ կատարելու համար, 1949 թվի գյուղատնտեսական մթերքների մթերումները ժամանակին ու հաջողությամբ՝ բոլոր գծերով կատարելու համար։ Այս աշխատանքների կատարման հաջող ապահովումը պահանջում է, որպեսզի ամենից առաջ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների մասին որոշումը դառնա բոլոր կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, սովխոզների և ՄՏ կայանների աշխատողների սեփականությունը։ Ագիտատորները այդ պետք է անեն կազմակերպելով որոշումների ընթերցանություններ, անցկացնելով զրույցներ, օգտագործելով տեղական փաստերն ու օրինակները։

Պարտիայի ու կառավարության այդ որոշումը գյուղատնտեսության աշխատավորների գիտակցությանը հասցնելու հետ միասին պարտիական կազմակերպությունները, ագիտկոլեկտիվները և յուրաքանչյուր ագիտատոր լայնորեն պետք է ծավալեն սոցիալիստական մրցությունը կոլխոզներում, բրիգա-

ղաներում, օղակներում, կոլխոզներում, ՄՏՍ կայաններում՝ 1949 թվին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների գծով բարձր բերք ստանալու և կատարելու կոլխոզնիկների ու գյուղատնտեսական աշխատողների կողմից վերցրած պարտավորությունները՝ բերքահավաքի և գյուղատնտեսության մթերքների մթերումների գծով։ Դրա համար անհրաժեշտ է օր-օրին ղեկավարել սոցիալիստական մրցությունը, լայնորեն հրապարակել մրցության ընթացքը, այդ նպատակով օգտագործելով պատի թերթերը, խլիչովկաները, ցուցադրումների տախտակները, բանավոր ու գրավոր, ինչպես և ցուցադրական ագիտացիայի բոլոր հնարավոր ձևերն ու միջոցները։

Փորձը ցույց է տալիս, որ սոցիալիստական մրցության շուրջը լավ կազմակերպված ագիտացիան, կոլխոզնիկների վերցրած պարտավորությունների սիստեմատիկորեն ստուգումն ու արդյունքների հրապարակումը, առաջավորների ու նորարարների խրախուսումը խոշոր ազդակ է հանդիսանում սոցիալիստական մրցության հետագա լայն ու խոր ծավալման համար։



Կարևոր նշանակություն ունի նաև ետ մնացող բրիգադաների, օղակների և առանձին կոլխոզնիկների աշխատանքների մեջ եղած թերությունների ու արատավոր կողմերի բացահայտումը, դրանց պատճառների բազմակողմանի վերլուծությունը և ժամանակին համապատասխան միջոցառումների նշումը դրանց վերացնելու համար, ձգտելով օգնություն կազմակերպել ետ մնացողներին և նրանց ներգրավելու առաջավորների շարքերը։

Ագիտկոլեկտիվների և ագիտատորների կարևորագույն և առաջնահերթ պարտականությունն է լայնորեն տարածել ու պրակտիկայում կենսագործել Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների, բարձր բերքի վարպետների աշխատանքի փորձը, կազմակերպել նրանց ելույթները կոլխոզային ժողովներում, բրիգադաներում և օղակներում, հասնելով այն բանին, որպեսզի կոլխոզներում լայն մասսայական շարժում առաջանա բարձր բերքի համար, հարուստ բերքը կարճ ժամկետում և անկորուստ հավաքելու համար, գյուղատնտեսական մթերքների մթերումների

պլանների կատարման ու գերակատարման համար, այս տեսակետից պետք է հաշվի առնել անցյալ տարիների ընթացքում կատարված հարուստ փորձը և լայնորեն օգտագործել այն։

Այս կարևորագույն խնդիրների կենսագործման համար պարտիական ռայկոմները և սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է լուրջ ու ամենօրյա օգնություն կազմակերպեն ագիտկոլեկտիվներին և ագիտատորներին, ղեկավարեն ու ուղղություն տան նրանց աշխատանքներին. սիստեմատիկորեն անցկացվող սեմինարների և ագիտկոլեկտիվների խորհրդակցությունների, նրանց համար կազմակերպվող դասախոսությունների, զեկուցումների և կոնսուլտացիաների միջոցով ագիտատորներին ծանոթացնել մեր երկրի, ռեսպուբլիկայի, տվյալ ռայոնի և գյուղի առաջ կանգնած հերթական խնդիրներին, մեր պարտիայի և սովետական կառավարության կարևորագույն որոշումներին, ինչպես և ՍՍՌՄ ներքին ու արտաքին քաղաքականության ակտուալ հարցերին։



Բերքահավաքի և գյուղատնտեսական մյուս աշխատանքների անցկացման ժամանակ պարտիական կազմակերպությունները և ագիտկոլեկտիվների ղեկավարները դաշտերում պետք է կազմակերպեն ագիտբրիգադաներ ու շրջիկ ագիտպունկտեր, դրանք ապահովելով գրականությամբ, թերթերով, ժուռնալներով, ցուցադրական ագիտացիայի նյութերով, լայն ագիտացիոն - մասսայական աշխատանք պետք է ծավալել նաև մթերման կայաններում և կետերում։

Պարտիական կազմակերպությունների և ագիտկոլեկտիվների ղեկավարների վրա դրված պարտականությունները կատարելու գործում նրանց լայն ու գործնական օգնություն և օժանդակություն պետք է ցույց տան կուլտուրայի տները, ակումբները, խրճիթընթերցարանները, գրադարանները, կինոքաղաքները, ռադիոհանգույցները և շրջանային թերթերի խմբագրությունները և մեր շրջանների ու գյուղերի մյուս բոլոր կուլտուր-լուսավորական կազմակերպությունները։ Այս

վերջինների աշխատանքները կազմակերպելու և պլանավորելու գործում մեծ դեր ունեն կատարելու պարտիական ռայկոմների պրոպագանդայի և ագիտացիայի բաժինների ու սկզբնական պարտիական կազմակերպությունները։

Մասսայական-քաղաքական աշխատանքների աշխուժացումը մեր ագիտացիան կբարձրացնի նոր ավելի բարձր աստիճանի և հզոր լծակ կհանդիսանա պարտիայի ու կառավարության կողմից մեր երկրի հզորության ու բարգավաճման համար խոշոր նշանակություն ունեցող խնդրի՝ 1949 թվի բերքահավաքի ու գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանի հաջող կատարման համար։



## ՀՈՒՄՔԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ինչպես ամեն մի նոր նախաձեռնություն, որը կատարվում է մեր երկրի հզորացման ու բարգավաճման համար, Կուպավինայի Նուրբ Մահուդի ֆաբրիկայի անվանի ստախանովականներ Մարիա Ռոժնևայի և Լիդիա Կոնոնենկոյի՝ հումքը խնայողաբար օգտագործելու մասին արած առաջարկությունը լայն արձագանք գտավ մեր գործարանների ու ֆաբրիկաների աշխատողների ամենալայն խավերի մեջ։ Բանվորները բազմաթիվ առաջարկություններ են անում արտադրական պրոցեսներն ավելի լավ կազմակերպելու, հումքը խնայողաբար ծախսելու, կորուստները վերացնելու համար։ Եվ եթե մենք, արտադրության ղեկավար աշխատողներս, հարկ եղած ուշադրությունը դարձնենք բանվորների առաջարկություններին, օգնենք նրանց այդ առաջարկությունները կյանքում կենսագործելու, ապա երկիրը դրանից հումքի խոշոր խնայողություններ կստանա, կբարձրանա արտադրողականությունը։ Բե-

րենք մի քանի օրինակներ մեր՝ Երևանի Ավտոդետալ գործարանից։

Իմ ղեկավարած մեխանիկական ցեխը հանդիսանում է գործարանի ավտոմոբիլային պահեստի մասեր արտադրող հիմնական ցեխ։ Մենք օգտագործում ենք տարբեր կառուցվածքի ու չափերի մեծ քանակությամբ բարձրարժեք մետաղ և հումքի թեկուզ ամենափոքր խնայողությունը վերջին հաշվով գործարանին խոշոր օգուտ է տալիս։ Ելնելով սրանից ես մշտապես իմ ուշադրության կենտրոնում եմ պահում մետաղի հումքի խնայողության հարցը, խրախուսում եմ բանվորներին մտածելու այդ մասին, ընթացք եմ տալիս հումքի խնայողության վերաբերյալ նրանց արած յուրաքանչյուր առաջարկության։

Մեր պատրաստած ավտոմեքենայի մասերից մեկի՝ մի ատամնավոր անիվի համար մենք գործածում ենք բավականին բարձրարժեք պողպատ, որը գործարանը ստանում է 10—12 մետր երկարություն ունեցող ձողերի ձևով։ Այդ ձողը պետք է կտրատել և վերածել 30—40 սանտիմետր երկարություն ունեցող կտորների։ Սկզբնական շրջանում այդ կտրատումը մենք կատարում էինք թանկարժեք մետաղից պատրաստած կտրիչով և



հենց այդ կտրելու պրոցեսում յուրաքանչյուր ձողից կորցնում էինք 20—25 կիլոգրամ թանկարժեք պողպատ։

Մի անգամ ինձ դիմեց ցեխի վարպետ Իվան Մալիշենկովը և առաջարկեց կտրիչի փոխարեն օգտագործել բարձր, մեկ րոպեում մինչև 3500—4000 մետր արագությամբ պտտվող և 3 միլիմետր հաստություն ունեցող պողպատե սկավառակ։ Վարպետ Մալիշենկովին ես հնարավորություն տվեցի և օգնեցի կենսագործելու իր առաջարկությունը։ Օգտագործելով ցեխի դազգահներից մեկը, նա նրա վրա ամրացրեց ավելի քան մեկ մետր տրամագիծ ունեցող իր սկավառակը։ Եվ ահա բարձր արագությամբ պտտվող այդ սկավառակը, փոխարինելով կտրիչին, շփման միջոցով հաջողությամբ սկսեց կտրել կարծր պողպատը։ Այսպիսով իսպառ վերացան կորուստները, գործարանը լրիվ չափով ապահովվեց այդ կիսաֆաբրիկատով։ Հաշվումները ցույց տվեցին, որ յուրաքանչյուր ձողի կտրումից այս՝ իր էությամբ շատ պարզ նորարարության շնորհիվ, խնայված մետաղից լրացուցիչ կերպով կարելի է պատրաստել 50 ատամնավոր անիվ։

Մետաղամշակման մի քանի գործարաններ, այդ թվում և Սարատովի մեքենաշինական գործարանը, դիմել են մեզ և խնդրել իրենց ուղարկել այդ հարմարանքի գծագրերն ու բացատրականը։

Ահա մեկ ուրիշ օրինակ ևս։

Մետաղների մշակման համար մեր ցեխը շատ մեծ քանակությամբ թանկարժեք յուղ է գործածում։ Մինչև այս տարվա փետրվար ամիսը ցեխն օրական օգտագործում էր 160—170 լիտր յուղ։ Յուղի կորուստները կրճատելու չափազանց պարզ առաջարկություն արեց խառատ Հակոբ Այվազյանը։ Նա առաջարկեց դազգահներից հավաքված մետաղի տաշեղները թափելուց առաջ լցնել մի ծակոտկեն ամանի մեջ և վերջինս դնել մեկ ուրիշ՝ ոչ ծակոտկեն ամանի մեջ։ Այդպիսով մետաղյա տաշեղների վրա եղած յուղը, որն առաջին հայացքից աննկատելի էր, դանդաղ ծորալով կհավաքվի ոչ ծակոտկեն ամանի մեջ։ Առանց ժամանակ կորցնելու ես պատրաստել տվեցի խառատ Այվազյանի առաջարկած հարմարանքը և իրոք արդյունքը շատ մեծ եղավ։ Ցեխի օգտագործած յուղի օրեկան պահանջը կրճատվեց 70—80 լիտրով։



Մեկ-երկու օրինակ էլ բերենք բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին։

Երիտասարդ բանվոր Հ. Ջիգիլիգյանը, որն աշխատում է ատամնահատ դազգահի վրա, դիմեց ինձ և ասաց, որ իր կարծիքով իր դազգահը շատ դանդաղ է աշխատում, հնարավոր չէ՞ արդյոք ավելացնել նրա արտադրողությունը։ Ես ասացի, որ կմտածեմ նրա առաջարկության մասին և սկսեցի հաշվումներ կատարել ու եկա այն եզրակացության, որ իրոք կարելի է ավելացնել այդ դազգահի արագությունը։ Հաշվումներ կատարելով ես փոխել տվեցի դազգահի ատամնանիվները, այդպիսով ավելացնելով արագությունը, ցուցումներ տվեցի ֆրեզն ավելի լավ սրելու, սառեցնող յուղի հոսանքն ավելացնելու վերաբերյալ։ Այդ բոլոր աշխատանքները կատարեց ինքը՝ Հ. Ջիգիլիգյանը։ Արդյունքները շատ փայլուն ստացվեցին։ Ջիգիլիգյանը այժմ 8 ժամում պատրաստում է 125 ատամնանիվ, պլանով նախատեսված 25-ի փոխարեն։

Աշխատելով այդպիսի բարձր արտադրողականությամբ Ջիգիլիգյանը սկսեց զգալ կիսաֆաբրիկատի պակաս, քանի որ այդ

մասի պատրաստման նախնական օպերա-ցիաները կատարող խառատ Ս. Պալյանը 8 ժամում պատրաստում էր միայն 30—35 հատ, հետևապես պետք եղավ ուշադրություն դարձնել Պալյանի դազգահի վրա ևս, քանի որ նա շատ աշխատանք էր թափում, իսկ ար-դյունքը քիչ էր լինում։ Նրա դազգահը շատ բարդ կառուցվածք ուներ։ Մենք պարզեցինք այն և երեք դազգահ հանձնելով Պալյանին առաջարկեցինք յուրաքանչյուր դազգահի վրա կատարել իր մշակած մասի միայն մեկ օպերացիան։ Այսպես աշխատե-լով նա օրական 30 մասի փոխարեն սկսեց մշակել 450 մաս, իր աշխատանքի արտա-դրողականությունը բարձրացնելով մոտ 15 անգամ։

Ինժեներ-մեխանիկ Հ. ՊԱՊԻԿՅԱՆ

Երևանի Ավտոդետալ գործարանի մե-խանիկական ցեխի վարիչ



## ԱԳԻՏԱՑԻԱՆ ԴԱՇՏՈՒՄ

Գարնան գյուղատնտեսական աշխա-տանքները սկսվելուց հետո կոլխոզնիկների մեջ տարվող քաղաքական-մասսայական աշ-խատանքը միայն այն ժամանակ իր նպա-տակին կհասնի, երբ մեր ագիտատորներն այն անց են կացնում դաշտում։ Միայն դաշտում, աշխատանքի ընթացքում ագիտատորը կարող է վեր հանել արտադրության առաջավորնե-րի աշխատանքի փորձը, բոլորի սեփականու-թյունը դարձնել այն, մատնացույց անել նը-կատվող թերությունները և հենց տեղն ու տե-ղը օգնել վերացնելու դրանք։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը դաշտ տեղափոխելու և այն կոլխոզային ար-տադրության խնդիրներին սպասարկելու լավագույն օրի-նակ է տալիս Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան կոլխոզի ագիտկոլեկտիվը, որի ղեկա-վարն է կոլխոզի պարտկազմակերպության քարտուղար ընկ. Ն. Փոթեյանը։

Այս տարվա գարնան գյուղատնտեսական աշխատանքներն սկսվելու նախօրյակին կոլ-

*խոզի ագիտկոլեկտիվն իր ուժերը դասավորեց այնպես, որ դաշտում ագիտացիոն-մասսայական աշխատանքում ընդգրկվեն անխտիր կերպով բոլոր կոլխոզնիկները։ Յուրաքանչյուր բրիգադայում և օղակում ագիտատոր առաջադրվեց այնպիսի մարդ, որն անմիջապես կապված է նրանց աշխատանքին, լինում է նրանց հետ։ Ապա ագիտկոլեկտիվի ղեկավարը հրավիրեց սեմինար պարապմունք, ուր մանրամասն ցուցումներ տվեց դաշտում ագիտացիոն-մասսայական աշխատանքը կազմակերպելու առանձնահատկությունների մասին, այն մասին, թե ինչի վրա պետք է առանձնապես ուշադրություն դարձնեն ագիտատորները դաշտային աշխատանքներն սկսելու առաջին օրերին։*

*Այդ օրվանից սկսած յուրաքանչյուր երկուշաբթի տեղի է ունենում ագիտկոլեկտիվի խորհրդակցություն, ուր ագիտատորները պատմում են անցած շաբաթվա ընթացքում իրենց կատարած աշխատանքի մասին և առաջադրանքներ ստանում հետագա անելիքների վերաբերյալ։*

*Այժմ կոլխոզի ագիտկոլեկտիվի ագիտատորների աշխատանքի փորձից վերցրած մի քանի օրինակներով ցույց տանք, թե ինչպես դաշտում տարվող ագիտացիոն-մասսայա-*



*կան կենդանի աշխատանքը օգնում է կոլխոզային արտադրության կազմակերպման ու բարձրացման գործին։*

*Կոլխոզի № 5 բամբակագործական բրիգադայի ագիտատորն է Վահան Շահնազարյանը։ Այդ բրիգադայի 4-րդ օղակը գարնան գյուղատնտեսական աշխատանքներն սկսելու առաջին շրջանում նկատելի կերպով հետ էր մնում մյուս օղակներից։ Ուշադրությամբ ուսումնասիրելով օղակի հետ մնալու պատճառները ագիտատոր Շահնազարյանը մի օր, աշխատանքի ընդմիջման ժամին, օղակը տարավ նույն բրիգադայի № 1 բարձր բերքի երիտասարդական օղակի հողամասը. մատնացույց անելով բամբակի պլանտացիաների հիանալի վիճակը, ագիտատորն ասաց.*

*— Այժմ համեմատեցեք այս դաշտերի վիճակը մեր դաշտերի հետ։ Ինկատի ունեցեք նաև, որ նրանք համարյա չորս օրով առաջ են մեզնից։ Այժմ ձեզ եմ հարցնում, մենք որ սոցիալիստական մրցության մեջ ենք մտել այս օղակի հետ, կկարողանա՞նք կատարել մեր վերցրած պարտավորությունները։*

*Իրենց և № 1 օղակի բամբակի դաշտերի միջև եղած տարբերությունն այնքան էր զգալի, ագիտատորի խոսքերն այնքան էին տեղին ու դիպուկ, որ օղակի անդամներից ոչ*

որ չփորձեց որևէ խոսքով առարկել Շահնազարյանին։ Իսկ երբ վերադարձան իրենց հողամասը, ագիտատորն ասաց.

— Իսկ գիտե՞ք ինչն է մեր օղակի հետամնացության պատճառը,— աշխատանքային ցածր կարգապահությունը։ Փոխանակ օգնելու օղակավարին, որը երիտասարդ է և դեռ նոր է անցել այդ աշխատանքին, օղակի անդամներից մի քանիսը հաճախ չեն կատարում նրա հանձնարարությունները, աշխատանքի ժամանակ զբաղվում են պարապ խոսակցությամբ։ Այ, օրինակ, Նրան Ավագյանը։ Ընկեր Նրան, դու սոցմրցման պայմանագիր ես կնքել և պարտավորվել ես հասնել Սիլվա Դավթյանին, բայց ուշ ես աշխատանքի դուրս գալիս, 1500 քառ. մետրի փոխարեն օրական քաղհանում ես 1000—1200 քառակուսի մետր։ Այդպե՞ս ես կատարում տված խոսքը։

Օղակի անդամները հանդիմանանքով նայեցին Նրանին։ Ագիտատորը մատնացույց արեց օղակի ևս երկու անդամների, որոնք նույնպես չէին կատարում սոցմրցման պայմանագրով իրենց վերցրած պարտավորությունները։ Ապա օղակի աշխատանքներում եղած թերությունների, նրա առանձին անդամների անբարեխիղճ աշխատանքի մասին



խոսեցին օղակի մյուս անդամները։ Օղակը միահամուռ կերպով խոսք տվեց՝ ամենակարճ ժամկետում վերացնել այդ թերությունները և հասնել առաջավորներին։ Այդ օրվանից 4-րդ օղակը դնալով լավացրեց իր աշխատանքները և այժմ նրա մշակած բամբակի դաշտերը կոլխոզում լավագույններից են։

Ահա մեկ ուրիշ օրինակ ևս։

Ագիտկոլեկտիվի հերթական հավաքույթում նրա ղեկավար Ն. Փոթեյանը ցուցումներ տվեց այն մասին, թե ագիտատորներն ինչպես պետք է մասսայականացնեն և պարզաբանեն ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը «1949 թվին բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումներն անցկացնելու մասին»։ Նա հաղորդեց, թե կոլխոզի պարտկազմակերպությունը ինչ միջոցներ է նախաձեռնել այդ որոշումը կոլխոզում կենսագործելու համար։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման ուսումնասիրությանը նվիրված իր առաջին զրույցի ժամանակ ագիտատոր Խալաթ Մանուկյանն ասաց.

— Մինչև հացահատիկի բերքահավաքը մեզ քիչ ժամանակ է մնացել և այդ ժամանակի ընթացքում մեր բրիգադան պետք է

ավարտի բամբակի 4-րդ մշակումը և 2-րդ վեգետացիոն ջուրը: Ինչ եք կարծում, կարո՞ղ ենք ավարտել:

Իրար ետևից ձայն են վերցնում կոլխոզնիկները և միահամուռ հաստատում, որ կարող են և անպայման կավարտեն:

Ապա ագիտատորը քննության է դնում հացահատիկի բերքահավաքը կազմակերպելու և հաջող անցկացնելու հարցը:

— Ովքե՞ր են ցանկանում հունձ կատարել,— հարցնում է ագիտատորը:

Ցանկություն է հայտնում 13 մարդ: Ագիտատորը շարունակում է իր խոսքը:

— Մեր բրիգադային պլանով տրված է հացահատիկի հունձն ու տեղափոխությունը կատարել 15 օրում, ես կարծում եմ, որ մենք այդ ժամկետը կկրճատենք:

— Անպայման,— լսվում է հնձվոր Վ. Մինասյանի ձայնը: Այ ես, օրինակ, խոսք եմ տալիս 1600-ի փոխարեն օրական հնձել 2.000 քառակուսի մետրից ոչ պակաս:

Մինասյանին արձագանքում են Ս. Շահինյանը, Վ. Խաչատրյանը, Շ. Վարդանյանը և մյուս հնձվորները:

Ագիտատորը լսում է բոլորին և արձանագրում յուրաքանչյուրի վերցրած պարտավորությունը: Ապա նա ասում է.



— Այսպես ուրեմն, վերցրած պարտավորություններից ելնելով,ստացվում է, որ մեր բրիգադան հունձը կավարտի 7 օրում: Իսկ ի՞նչ կասեն հավաքողներն ու խուրձ փոխադրողները:

Նորից յուրաքանչյուր կոլխոզնիկ իր խոսքն է ասում և կոնկրետ պարտավորություն վերցնում:

Վերջում բրիգադան միահամուռ կերպով որոշում է իր ունեցած 20 հեկտար հացահատիկի հունձն ու փոխադրումը ավարտել 8 օրում և կնքելով սոցմրցության պայմանագիր, մրցության է հրավիրում մյուս բրիգադաներին:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը ագիտատորների օգնությամբ այսպես գործարար կերպով ուսումնասիրեցին և կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին նաև կոլխոզի մյուս բրիգադաները: Ելնելով բրիգադաների վերցրած պարտավորություններից կոլխոզը որոշեց կազմ ու պատրաստ դիմավորել հացահատիկի բերքահավաքը և կոլխոզի ունեցած 315 հեկտար հացահատիկի հունձը և փոխադրումը պլանով տրված 15 օրվա փոխարեն կատարել 8 օրում:

Թե ինչպես ագիտատորը, գտնվելով դաշ-

տում, աշխատելով կոլխոզնիկների հետ, կարող է օգնել նրանց ավելի լավ աշխատելու, այդ կարելի է տեսնել նաև հետևյալ օրինակից:

Միկոյանի անվան կոլխոզի այգեգործական № 10 բրիգադան խոտհունձն սկսեց կազմ ու պատրաստ և մեծ խանդավառությամբ: Սակայն այդ խանդավառությունն առաջին օրերին սպասված արդյունքը չէր տալիս, խոտհունձը դանդաղ էր ընթանում: Ագիտատոր Ա. Եղիազարյանը սկսեց ուշի ուշով փնտրել դրա պատճառները. պարզվեց, որ կոլխոզնիկների եռանդուն աշխատանքն իր արդյունքները չի տալիս միայն այն պատճառով, որ հնձվորների մեջ ճիշտ չեն բաժանված հնձվելիք տարածությունները: Մի քանի գերանդավորների հանձնված էր խաղողի այգու միջթմբային տարածությունները և նրանք չէին կարողանում ազատ կերպով շարժել գերանդիները, մինչդեռ անհրաժեշտ էր, որ այդտեղ խոտը քաղեն մանգաղավորները: Ագիտատորը այդ մասին խոսեց բրիգադիրի հետ. կատարվեց ուժերի ճիշտ դասավորում, որի հետևանքով բրիգադան սկսեց զգալի չափով գերակատարել խոտհնձի առաջադրանքները:

Լ. ԴԱՐԻԲՅԱՆ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԻ ԶՐՈՒՅՑ

# ԾԽԱԽՈՏԻ ՊԼԱՆՏԱՑԻԱՆԵՐԻ ՄՇԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ռեսպուբլիկայի ծխախոտագործական կոլխոզները հաջողությամբ ավարտեցին ծխախոտի պլանտացիաների սածիլացման աշխատանքները:

Առաջավոր կոլխոզներն արդեն սկսել են սածիլացված պլանտացիաների միջշարքային տարածությունների մշակման ագրոձեռնարկումները: Ծխախոտի պլանտացիաների մշակման ընթացքում անհրաժեշտ է խիստ հսկողություն սահմանել ագրոկոմպլեքսի կիրառման վրա ամեն մի հողակտորում, որպեսզի բոլոր տարածությունների վրա ապահովվի բերքի ստացման պետական պլանային առաջադրանքը: Այժմ յուրաքանչյուր ծխախոտագործ կոլխոզի առաջնահերթ խնդիրն է՝ սեղմ ժամկետում և ագրոտեխնիկական բարձր որակով ավարտել ծխախոտի պլանտացիաների առաջին փխրեցումը ու քաղհանը, միաժամանակ ապահովել պահանջված բույսերի քանակը բոլոր պլանտա-

ցիաներում: Միջշարքային և միջբուսային տարածությունների առաջին փխրեցում—քաղհանը ծխախոտի սածիլացումից հետո մշակության կարևորագույն պրոցեսներից մեկն է: Այդ աշխատանքը պետք է սկսել և ավարտել 6—8 բանվորական օրում:

Պետք է պլանտացիաների հետագա փխրեցումն ու քաղհանը կատարել յուրաքանչյուր անգամ դաշտը ջրելուց 1—2 օր հետո, երբ հողը «բեշի» է եկել, սակայն ոչ ուշ, քան նախորդ քաղհան- փխրեցումից 8—10 օր անց: Հասկանալի է, որ ժամանակին և ճիշտ կատարված քաղհանի ու փխրեցման շնորհիվ հողի փխրուն վիճակը վերացնում է նրա մեջ մազականության վերականգնման հնարավորությունը, հետևապես և ապահովում է խոնավության պահպանումը հողում, օժանդակում է հողերի աերոպային և ստեղծում է բոլոր պայմանները, որպեսզի բույսը կարողանա ավելի լավ յուրացնել սննդարար նյութերը:

Ծխախոտի բարձր և լավորակ բերք ստանալու համար բույսի վեգետացիայի ընթացքում հողի քաղհանը և փխրեցումը պետք է կատարել առնվազն 3—4 անգամ, ձեռքի ուրագներով, իսկ հարթ պլանտացիաներում ձիու կամ ձեռքի կուլտիվատորներով: Պլան-



տացիաների փխրեցման խորությունը կախված է հողի հատկություններից: Ծանր հողերում միջշարքային տարածությունների փխրեցումը ձիու կուլտիվատորներով կատարելիս խորությունը պետք է լինի 10—12 սմ., իսկ ձեռքի ուրագներով՝ 6—8 սմ. Թեթև փխրուն հողերում կուլտիվացիայի խորությունը համեմատաբար քիչ պետք է լինի՝ 8—10 սմ., իսկ ուրագներով քաղհան և փխրեցում կատարելիս 5—6 սանտիմետր:

Ծխախոտի բերքատվության և որակի բարձրացման ագրոմիջոցառումներից մեկն էլ հանդիսանում է նաև ծխախոտի պլանտացիաների ճիշտ ու ժամանակին սնուցումը հանքային և օրգանական պարարտանյութերով:

Մեր առաջավոր ծխախոտագործական կոլխոզների, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների փորձով ապացուցված է, որ բացի հիմնական խոր վարի տակ տրվող պարարտացումից, ծխախոտի վեգետացիայի ընթացքում, այն է՝ առաջին և երկրորդ փխրեցման ժամանակ, ծխախոտի պլանտացիաներին պետք է տալ նաև սնուցում, հիմնական պարարտացման ժամանակ տրված հանքային պարարտանյութերի 25—30 տոկոսի չափով: Սնուցում տալու ամենահիմնական

պայմաններից մեկն այն է, որ արված նյութը լուծվի ջրի մեջ և հասնի բույսի արմատային սիստեմին, դրա համար անհրաժեշտ է սնուցումից անմիջապես հետո պլանտացիան ջրել: Առաջավոր կոլխոզնիկներն ասում են, որ ծխախոտի բույսերը, ստանալով բավականաչափ լրացուցիչ հանքային և օրգանական պարարտանյութեր, իրենց զարգացման բոլոր ստադիաներում ուժեղ չափով զարգացնում են արմատային սիստեմը և հզոր վերերկրյա մասը, որոնք անհրաժեշտ են բարձր բերք և որակյալ հումք ստանալու համար: Նրանք անջրդի պայմաններում (օրինակ՝ Շամշադինի, Ղափանի, Նոյեմբերյանի շրջաններում) սնուցումը տալիս են մթնոլորտային տեղումների ժամանակ, կամ նախօրյակին: Սնուցման ժամանակ հաշվի են առնում ծխախոտի աճեցողությունը, թույլ աճեցողության դեպքում անհրաժեշտ են համարում սնուցում կատարել ազոտական պարարտանյութերով— ամոնիում սուլֆատով կամ ամյակի սելիտրայով և ոչ մի դեպքում չեն թույլատրում սնուցման համար օգտագործել կիր-ազոտի պարարտանյութ: Ազոտի միակողմանի ավելցուկը հողում նույնպես նրանք անցանկալի են համարում և ասում են, որ ծխախոտի վեգետա-



ցիան ձգձգում է, բույսի հասունացումը դանդաղեցնում է:

Առաջավոր ծխախոտագործները սնուցման համար լայն չափով օգտագործում են նաև տեղական պարարտանյութեր՝ գոմաղբահյութը, թռչնաղբը և մոխիրը: Սնուցման ժամանակ պարարտանյութերը տալիս են չոր, կամ ջրի մեջ լուծված վիճակում: Սնուցման համար օգտագործվող պարարտանյութերը, մանրացնում են, որպեսզի պարարտանյութերը լինեն լրիվ փոշիացած դրությամբ: Մանրացրած չոր պարարտանյութերը պարկերով փոխադրում են ծխախոտի պլանտացիաները և զգուշորեն հավասարաչափ ցրում ծխախոտի միջշարքային տարածություններում, որից հետո հողը փխրեցնում են և նոր ապա ջրում:

Առաջավոր ծխախոտագործները առաջին սնուցումը տալիս են ծխախոտի միջշարքային տարածությունների առաջին փխրեցման ժամանակ, իսկ երկրորդ սնուցումը—երկրորդ փխրեցման ժամանակ: Իսկ եթե տեսնում են, որ պլանտացիաներում բույսերի աճեցողությունը ընթանում է դանդաղ, կատարում են լրացուցիչ, 3-րդ սնուցում:

Առաջին սնուցման ժամանակ մեկ հեկտարին պետք է տալ 50 կգ. ամոնիում սուլ-

ֆատ, կամ 40 կգ. ամյակի սելիտրա և 80—100 կգ. սուպեր ֆոսֆատ։ Երկրորդ սնուցման ժամանակ պետք է տալ մեկ հեկտարին 25—35 կգ. ամոնիում սուլֆատ և 60—100 կգ. սուպերֆոսֆատ։

Մեր առաջավոր ծխախոտագործները տեղական պարարտանյութերից օգտագործում են՝ մաքուր մոխիր, որը մեկ հեկտարին շաղ են տալիս 2—3 ցենտներ, թռչնաղբը չոր վիճակում, նույնպես մանրացրած, 1 հեկտարին տալիս են 3—4 ցենտների չափով։ Թռչնաղբի հետ տալիս են նաև 80—100 կգ. սուպերֆոսֆատ։ Գոմաղբը տալիս վերցնում են գոմաղբահյութը և հեկտարին տալիս են 2—4 տոննա, վերջինս լուծում են ոռոգման ջրի մեջ։

Ծխախոտի զարգացման որոշ շրջանում, այն է՝ սածիլումից 40—50 օր հետո, ցողունի ծայրում առաջանում են ծխախոտի ծաղիկներ, որից հետո ծխախոտի բույսը այլևս չի բարձրանում և նրա ցողունի վերին տերևների հիմքում զարգանում են երկրորդական ճյուղեր (բջեր)։ Այդ ծաղիկներն ու բջերը մեծ քանակությամբ սնունդ են սպառում, դրանով իսկ անբարենպաստ պայմաններ ստեղծելով ծխախոտի բերքատու հիմնական տերևների զարգացման համար։ Ծխախոտի



տերևների նորմալ զարգացման ու հասունացմանը նպաստելու համար պետք է կատարել 2 անգամ ծաղկատում և բջատում։ Ծաղկատումը պետք է սկսել ծխախոտի մասսայական ծաղկման շրջանում, ըստ որում ուժեղ հողերում, բույսի փարթամ աճման պայմաններում ծաղկատումը պետք է կատարել ոչ շատ խորը, այսինքն առանց ծայրի փոքր տերևները հեռացնելու։ Ուժասպառ հողերում, բույսի թույլ աճման պայմաններում, ծաղկատել ավելի շուտ և խորը, այսինքն ծաղիկների հետ պոկելով նաև ծայրի փոքր երկու տերևները։ Բջատումը պետք է կատարել ըստ բջերի զարգացման, 2 անգամից ոչ պակաս, չթողնելով, որ բջերը 7—9 սմ. ավելի երկարեն։

Ծխախոտագործ կոլխոզների մեծ մասը խախտում են ծխախոտի մշակման ժամկետները, որոշ տեղերում խախտում են ագրոկանոնները։ Մեր ագիտատորների խնդիրն է՝ առաջավորների փորձի հիման վրա լուրջ օգնություն կազմակերպել կոլխոզներին և առանձին կոլխոզնիկներին՝ ժամանակին ու ագրոկանոնների հիման վրա բարձրորակ կատարել ծխախոտի պլանտացիաների մշակումը և ապահովել ծխախոտի բարձր բերք։

Գյուղատնտես Ա. ՆԵՐՍԻՍՅԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

### ՍՆՆԴԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

(Թվեր և փաստեր)

*Ստալինյան նոր հնգամյա պլանով մեր ռեսպուբլիկայում խոշոր զարկ է տրվում սննդարդյունաբերության զարգացմանը։ Ըստ հնգամյա պլանի միայն Հայկական ՍՍՌ Սննդի արդյունաբերության մինիստրության գծով նախատեսված է 152 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, որից գինեգործության արդյունաբերության գծով՝ 135 միլիոն ռուբլի։ Մինիստրության գծով արդեն կառուցվել և շահագործման են հանձնվել մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ։*



### ՆՈՐ ԳԻՆԵԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

*Աշտարակի շրջանի Օշական գյուղի մոտ կառուցվում է ռեսպուբլիկայի գինեգործական խոշոր ձեռնարկություններից մեկը՝ «Խերես» գործարանը, որը պատրաստելու է ընտիր գինիներ։ Գործարանի տարողությունը լինելու է 600 հազար դեկալիտր. արդեն շահագործման է հանձնված առաջին հերթը՝ 300 հազար դեկալիտր տարողությամբ։*

*Ըստ նոր հնգամյա պլանի ռեսպուբլիկայում խոշոր չափով ընդլայնվում է կոնյակի արդյունաբերությունը։ Երևանում կառուցվում է կոնյակի նոր գործարան՝ 300 հազար դեկալիտր կարողությամբ։ Գործարանի մի մասը շահագործման կհանձնվի այս տարվա 2-րդ կիսամյակի ընթացքում։*

*Նոր հնգամյակի ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել գինու վերամշակման նոր կետեր Կոտայքում, Նոյեմբերյանում և Հոկտեմբերյանում։*

### ԳԱՐԵՋՐԻ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

*Նոր հնգամյա պլանի համաձայն Երևանում կառուցվում է գարեջրի նոր, խոշոր գործարան, որի շինարարությունն ամբողջովին ա-*

վարտվելու է եկող տարի։ Գործարանը շահագործման հանձնվելուց հետո ռեսպուբլիկայում գարեջրի արտադրությունը կավելանա երկու և կես անգամ։

Սկսվել է գարեջրի նոր գործարանների կառուցումը նաև Կիրովականում և Արտաշատում։ Այդ գործարանները լրիվ չափով բավարարելու են տեղի ազգաբնակչության պահանջները։

## ՀԱՑԻ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

Երևանում արագ թափով առաջ է գնում մեքենայացված հացի նոր գործարանի շինարարությունը. գործարանը շահագործման կըհանձնվի այս տարվա վերջում։

Նոր հնգամյա պլանի համաձայն հացի նոր գործարաններ են կառուցվելու նաև Կիրովականում, Արաբկիրում, Սևանում, Ղափանում և Ստեփանավանում։

## ԱՊԱԿԵ ՏԱՐԱՅԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Ռեսպուբլիկայում գինեգործության, ինչպես նաև այլ խմիչքների արտադրության արագ զարգացումը պահանջում է ունենալ տեխնիկայի նորագույն հիմքերի վրա կազմակերպված ապակյա տարայի գործարան։



Այդ պահանջը բավարարելու համար մինիստրությունը Արզնիում կառուցում է շշի խոշոր գործարան, որը տարեկան արտադրելու է 1 միլիոն շիշ։ Գործարանը շահագործման պետք է հանձնվի այս տարի։

## ԲՈՒԺԻՉ ՋՐԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

Իրենց բուժիչ հատկություններով հանրահայտնի են մեր ռեսպուբլիկայի Ազիզբեկովի շրջանում գտնվող «Ջերմուկ» և Դիլիջանում գտնվող «Դիլիջան» կոչվող հանքային ջրերը։ Այդ ջրերը մեր ռեսպուբլիկայի բոլոր քաղաքների ու շրջանների ազգաբնակչությանը մատչելի դարձնելու համար մինիստրությունը այդ վայրերում կառուցել է հանքային ջրերի գործարաններ, որոնց արտադրանքը արդեն վաճառքի է հանվում։

***

Ստալինյան նոր հնգամյակի ընթացքում խոշոր չափով ընդարձակվել և մեքենայացվել են նաև մինիստրության արդեն գործող արդյունաբերական ձեռնարկությունները՝ Երևանի Միկոյանի, Հացի, Մակարոնի, Ձեթօճառ գործարանները, կրկնապատկվել է հրուշակեղենի արտադրությունը։

# ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

✪ Եթե բերքահավաքի ժամանակ ամեն մի քառակուսի մետր հնձված տարածության վրա տրվի 1—2 հասկի կորուստ, այդ յուրաքանչյուր հեկտարից կկազմի 10—15 կիլոգրամ մաքուր հացահատիկ։

Հնձի ժամանակ յուրաքանչյուր քառակուսի մետր տարածության վրա 5 հասկի կորուստ տալու դեպքում, երկիրը յուրաքանչյուր հեկտարից պակաս կստանա 37 կիլոգրամ հացահատիկ։ Եթե այդ հասկերը հավաքվեն փոցխերով կամ ձեռքով, ապա երկիրը դրանից կստանա 150 միլիոն փութ հաց։

Հացահատիկի հատկապես մեծ կորուստներ էստացվում, երբ ուշացվում է բերքահավաքը։

Փափուկ գարնանացան ցորենը, լրիվ հասունանալուց 7—10 օր հետո յուրաքանչյուր օր հեկտարից կորցնում է մինչև 30—50 կիլոգրամ հացահատիկ, տարեկանը 10-րդ օրը հեկտարից կորցնում է 1,5—2 ցենտներ։

Եթե տնտեսությունը միջին հաշվով ունի 300 հեկտար հացահատիկի ցանք, ապա բեր-



քահավաքի ժամկետները միայն մեկ շաբաթով երկարաձգելով, այն կորցնում է 600 ցենտներ ամենաընտիր հացահատիկ (թափվում են ամենամեծ հատիկները)։

Յուրաքանչյուր տնտեսության մեջ հասկավոր կուլտուրաների բերքահավաքը 20 օրվա փոխարեն կատարելով 15 օրում կարելի է պահպանել բերքի 10—15 տոկոսը։

Կոմբայնով բերքահավաք կատարելիս հատիկորսիչը հեկտարից հավաքում է 20 կիլոգրամ հացահատիկ։ Եթե ընթացիկ տարում բոլոր աշխատող կոմբայնները սարքավորվեն հատիկորսիչներով, ապա կարելի է կորուստից փրկել ավելի քան 30 միլիոն փութ հացահատիկ։

Կոմբայնով աշխատելիս պետք է ձգտել հացահատիկները հնձել ամենացածր կտրվածքով։ Ցածր կտրվածքը հնարավորություն է տալիս յուրաքանչյուր հեկտարի վրա կորուստից փրկել 40 կիլոգրամ հացահատիկ, իսկ ամբողջ Միության մասշտաբով այդ կկազմի ավելի քան 60 միլիոն փութ։

Խուրձերը փոխադրելիս, եթե սայլի հատակը ծածկված չի շորով կամ խսիրով, ապա յուրաքանչյուր սայլից թափվում և կորչում է 400—500 գրամ հացահատիկ, որը հեկտարի հաշվով յուրաքանչյուր հեկտարից հասնում է

50 կիլոգրամի։ Եթե յուրաքանչյուր սայլից
այդքան հացահատիկի կորուստ տրվի, ապա
երկիրը տասնյակ միլիոն փութ հացահատիկ
պակաս կստանա։

✪ Ճակնդեղի մեկ տոկոս կորուստը կը-
կազմի 2 միլիոն փութ ճակնդեղ, կամ թե 280
ցենտներ շաքար։

✪ Երբ տրակտորի մեջ վառելանյութը լցը-
վում է ոչ թե մղիչով, կամ խողովակով, այլ
դույլով, ապա միայն մեկ տոկոսի տված վա-
ռելանյութի տարեկան կորուստը կազմում է
500 կիլոգրամից ոչ պակաս։

Փոխադրությունների վատ կազմակերպման
հետևանքով կորչում է վառելանյութի 2—3
տոկոսը։ Այս կորուստները վերացնելով յու-
րաքանչյուր ՄՏ կայան տարվա ընթացքում
խնայված վառելանյութով կարող է տրակ-
տորային աշխատանքներ կատարել ավելի
քան հազար հեկտարի վրա։

Արևի տակ թողնված վառելանյութով լի
տակառից յուրաքանչյուր ժամ կորչում է մեկ
կիլոգրամ վառելանյութ։

Տրակտորիստների տված վառելանյութի
մեկ տոկոս խնայողությունը հնարավորու-
թյուն կտա լրացուցիչ կերպով վարել 2 մի-
լիոն 500 հազար հեկտար հող։



## ՄԵԿ ԲՈՊԵԻ ԱՐԺԵՔԸ

Մեր ամբողջ երկրի մասշտաբով աշխա-
տանքային յուրաքանչյուր բոպեի արժեքը
հսկայական մեծություն է կազմում։ Հետ-
պատերազմյան ստալինյան հնգամյակի վեր-
ջին տարում, արդյունաբերության տարեկան
արտադրանքի արժեքը հավասար կլինի 205
միլիարդ ռուբլու, այսինքն ավելի քան 560
միլիոն ռուբլի մեկ օրում, աշխատանքային
յուրաքանչյուր բոպեն (երկհերթ աշխատան-
քի դեպքում) կարժենա ավելի քան 580 հա-
զար ռուբլի։ Նույն 1950 թվին սովետական
հանքափորները յուրաքանչյուր բոպեում կը-
հանեն ավելի քան 952 տոննա քարածուխ,
մետաղագործները կձուլեն 96 տոննա պող-
պատ և 78 տոննա թուջ, տեքստիլագործնե-
րը կարտադրեն ավելի քան 19 հազար մետր
գործվածքեղեն, կոշկագործները ազգաբնակ-
չությանը կտան 1200 զույգ կոշիկ։ 1950 թը-
վականին մեր երկրում յուրաքանչյուր բո-
պեում կարտադրվի մեկ ավտոմոբիլ, երկու
հեծանիվ, մեկ կարի մեքենա, մեկ ֆոտոա-
պարատ, երկու ռադիոընդունիչ և այլն։

Այսպիսին է յուրաքանչյուր խնայված
բոպեի արժեքը։

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

Գ. ՇԻՏԱՐԵՎ.— «Բնակչության մեջ ըստ բնակության վայրի կատարված քաղաքական ագիտացիայի փորձը». *Հայպետհրատ 1949 թ.*

*Քաղաքական ագիտացիան հիմնականում կատարվում է գործարաններում, հիմնարկներում, տրանսպորտում, կոլխոզներում, սովխոզներում և մեքենա-տրակտորային կայաններում, այսինքն ըստ աշխատավորների աշխատանքի վայրի։ Սակայն մեր երկրում կան բնակչության զգալի խմբեր, որոնք արտադրության մեջ զբաղված չեն, այն է՝ տնային տնտեսուհիները, բանվորների և ծառայողների ընտանիքների ծերացած անդամները, հաշմանդամներն ու թոշակառուները, տնայնագործ-արհեստավորները և ուրիշներ։ Նրանք ապրում են նույն կյանքով ու աշխատանքով, ինչով ապրում է ամբողջ սովետական երկիրը, հետաքրքրվում են քաղաքական ընթացիկ իրադարձություններով, ջերմորեն արձագանքում են պարտիայի ու կառավարության կոչին։*



*«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած վերոհիշյալ բրոշյուրում հանգամանորեն ցույց է տրված, թե ինչպես պետք է կազմակերպել քաղաքական ագիտացիան բնակչության մեջ ըստ բնակության վայրի, ինչպես գործադրել ագիտացիոն աշխատանքի բազմազան ձևերն ու մեթոդները։ Բրոշյուրում լայնորեն լուսաբանված է մեր լավագույն ագիտատորների աշխատանքի հարուստ փորձը, ցուցումներ է տրված բնակչության մեջ ըստ բնակության վայրի աշխատող ագիտատորներին՝ իրենց բոլշևիկյան կենդանի խոսքով ազդեցություն գործելու բնակչության այն խմբերի վրա, որոնք զբաղված չեն արտադրության մեջ և օգնելու նրանց ակտիվորեն մասնակցելու կոմունիզմի կառուցման գործին։*

*Ագիտատորները պետք է բնակչության շրջանում կազմակերպեն հնգամյա պլանի խնդիրների ու նրա կատարման արդյունքների լայն պրոպագանդան. Նրանք պետք է ցույց տան, թե ինչպես մեր սոցիալիստական երկրի տնտեսական հզորության աճման հետ միասին բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը, թե ինչպես պարտիան ու կառավարությունը հոգա-*

յական։ Ուշադրություն են դարձնում աշխատավորների կուլտուր-կենցաղային կարիքներին։ Ագիտատորները պարտավոր են այդ խնդիրների պարզաբանումը զուգակցել բնակչությանը հասարակական օգտակար գործերում մասնակից դարձնելու հետ։ Բրոշյուրում պատմվում է այն մասին, թե ինչպես Գորկի քաղաքի մի քանի ռայոններում, ագիտատորների նախաձեռնությամբ, տնային տնտեսուհիները գործարար կերպով մասնակցում են փողոցների ու բակերի կանաչապատմանը, վերականգնում իրենց այգիները, կարգի բերում փողոցները, հետևում շենքերի ու բակերի մաքրությանը և այլն։

Առանձին ագիտատորների աշխատանքի փորձով բրոշյուրում ցույց է տրված, թե ինչպես բնակչության շրջանում ագիտացիան կարելի է անցկացնել վառ, աշխույժ, հետաքրքրական ձևով։ Բնակչության մեջ աշխատող ագիտատորները պետք է մոտիկից ու լուրջ կերպով զբաղվեն աշխատավորների կենցաղային հարցերով, այդ հանդիսանում է մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի կարևորագույն մասը։

—◆—

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Ի. ՍՏԱԼԻՆ*— Երկեր, 8-րդ հատոր, *Հայպետհրատ, 1949 թ., 454 էջ։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետում և Համ. Կ(բ)Պ Կենտկոմում. «1949 թ. բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումներն անցկացնելու մասին»։ *Հայպետհրատ, 1949 թ.։*

*Ա. ՏՈԼՍՏՈՅ*— «Տառապանքի ուղիներով» *(տրիլոգիայի 2-րդ մասը), Հայպետհրատ, 1949 թ. 449 էջ, գինը 15 ռուբլի։*

*Ղ. ԿՈՄՈՒՆԻ*—«Նա փնտրում է զավակին», *Հայպետհրատ, 1948 թ. 154 էջ, գինը 9 ռ.։*

*ԳԱՐԵԳԻՆ ՍԵՎՈՒՆՑ*— Իրանական նոթեր։ *Հայպետհրատ, 1949 թ., 379 էջ, գինը 10 ռ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

*ՎՖ 02222 Պատվեր № 537 Տիրաժ 8.600*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 12 1949 г.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
# 1949 ԹՎԻ 2-ՐԴ ԿԻՍԱՄՅԱԿԻ
# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և Փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկներում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**6 ամիսը 12 համարը — 6 ռուբլի**<br>
**3 ամիսը 6 „ — 3 „**<br>
**Մեկ համարը—50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**